րուրդը։ Եգիպտացիները քանի մը օրուան բաւելու չափ միայն վառելանիւթ ունին, եթէ Անգլիացիները ձեռք չքաշեն իրենց խստութիւններէն, հացը պիտի պակսի եւ զանազան նպաստարկութիւններ պիտի չկրնան գործել։ Ներքին Նախարար Սերա-կելտին փաշա կը խորհի թէ այս բոլորը համայ-նավարներու հացին ջուր կը քսեն, որպէսզի խռո-վութիւն յարուցանեն երկրին մէջ։ Գահիրէի կա-ռավարութիւնը մտադիր է Մեռեալ ծովուն փա-րոսները չվառել, եթէ Անգլիացիները յամառին ի-րենց պատժական միջոցներուն մէջ եւ արտաքսեն տեղացի պահապանները։

## Թուրքիա կը պնդէ

### ԱՏԼԱՆՏԵԱՆ ԴԱՇԻՆՔԻՆ ՄԷՋ ՄՏՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Միջին Արեւելքի պաշտպանութեան համար, վերջերս տեղի ունեցած Անգարայի զինուորական ժողովին՝ սեղանի վրայ բերուած էր Թուրքիոյ մասնակցութիւնը Ատլանտեան զին. պաշտպանո-ղական դրութեան, որ կը կրէ «արեւմտեան Մի-ջերկրականի հրամանատարութիւն» անունը։

Դեռ հարցը կ'երեւի լուծում չէ գտած, որովհետեւ Թուրքիա յամառօրէն կը պնդէ իր նախկին տեսակէտին վրայ։ Անգարայի կառավարութիւնը համաձայն է մասնակցելու Միջին Արեւելքի պաշտ-պանողական դրութեան, բայց ատիկա կազմուած չէ տակաւին եւ եթէ նոյնիսկ իրականութիւն դառնայ, Եգիպտոսը որդեգրած պարագային պի-տի չունենայ իր ուզած տարողութիւնը։

Մնաց որ, Թուրքիա ամէն գնով կը փափաքի մտնել «Այդընհաուըրի հրամանատարութեան» մէջ եւ այդպէս դառնալ Ատլանտեան պետութիւն մը բառին բովանդակ իմաստով։ Անշուշտ, ասիկա արգելք պիտի չհանդիսանայ, որպէսզի նոյն ատեն ըլլայ գործօն մէկ անդամը արեւմտեան Միջերկ-րականի հրամանատարութեան, եթէ այս վերջինը իրականանայ։

## Մարոքի դէպքերը

Ինչպէս հաղորդած էինք երէկ, մարդպան զօր. Կիյոմի բացակայութենէն օգտուելով, Մարոքի «Իսթիքլալ» կուսակցութիւնը խռովութիւն յարոյց Քազապլանքայի մէջ, որ արիւնալի հետեւանքներ ունեցաւ։ Հոկտ. 15ին Սուլթանը ստորագրած էր հրամանագիր մը, որ երկրագործական, առեւտրական եւ ճարտարարուեստական խորհուրդներու ընտրութեան հրահանգ կուտար։

«Իսթիքլալ» կուսակցութիւնը պատեհ նկատեց առիթը, պոյքոթի ենթարկելու ընտրութիւնները։ Ժամը 1ին երեխաները սկսան գրգռել քուէարկուները, յետոյ անոնց միացան բազմաթիւ տեղացիներ եւ սկսան նախատել, խոչընդոտել եւ քարկոծել ընտրողները։

Պահակները միջամտեցին, կռիւ ծագեցաւ իրենց եւ խռովարարներուն միջեւ։ Շրջակայ բնակիչները սկսան քարեր նետել տանիքներէն եւ պատշգամներէն, ոստիկանները ստիպուեցան զէնքի դիմել։ Մարոքցի մը սպաննուեցաւ, ուրիշ քանի մը հոգի ալ վիրաւորուեցան։

Մինչ խաղաղութիւնը կը վերահաստատուէր այստեղ, շրջակայ թաղերուն ընտրական գրասենեակներուն շուրջ կռիւը ծայր կուտար։

Ամբոխը մոլեգին կ'աղաղակէր .— Կեցցէ Մարոքի Թագաւորը»։ Խուժանը սպառնագին կը յառաջանար, ոստիկանները կը հարկադրուէին քանի մը ձեռք գնդացիր պարպել օդին։ Մարոքցիները իրենց առջին ձգած էին 600 — 700 երեխաներ, ինքզինքնին պաշտպանելու համար, իրենք ալ քանի մը գնդակ արձակեցին։

Դժբախտաբար այս խռովութիւններուն զոհ գացին խաղաղ քաղաքացիներ։ Բազմաթիւ Եւրոպացիներ իրենց թաղին պահականոցները ապաստանեցան, երեսնին արիւնաթաթախ։

Ժամը 7ին կացութիւնը աւելի ծանրացաւ. ցուցարարները փորձեցին զէնքի պահեստները ձեռք անցնել։ Խռովութեան հաշուեկշիռը հետեւեալն է .— Հինգ մեռեալ, 80 վիրաւոր, որոնցմէ 40ը ցուցարարներ, 10 անցորդներ եւ 20 ոստիկաններ։ Կառավարութիւնը 700 հոգի ձերբակալած է։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՈԿՏԵՄԲԵՐԵԱՆ Յեղափոխութեան 34րդ տարեդարձին առթիւ, երգահան Արամ Խաչատուրեան նոր քայլերգ մը դաշնաւորած է, Տիմիթրի Զոսթաքովիչի հետ, բանաստեղծ Միխալքովի խօսքերուն վրայ։

ՔՈՐԷԱՅԻ բանակցութիւնները միշտ կը ձըգձգուին, որովհետեւ Չինեւքորէացի պատուիրակները կը մերժեն փոխել իրենց տեսակէտը զինադուլի սահմանագծի մասին։ Դաշնակից բանագնացներէն զօր. Հուճ հեգնանքով դիտել տուած է. — Միայն ճաշի երթալու ժամանակի մասին համաձայն գտնուեցանք։




**Le Gérant : A. NERCESSIAN**

Imp. DER AGOPIAN, 17, Rue Damesme, Paris (13)


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՎԱԼԱՆՍ Նոյեմբեր 4ին։

ԿՐԸՆՈՊԼԸ Նոյեմբեր 6ին։

Այս ժողովներուն ներկայ կ'ըլլայ Շրջ. Վարչութեան ներկայացուցիչը։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Մարսէյլի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբի պարահանդէսը, 22 Դեկտ.ին, շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ լոյս։

ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ.— Տէր եւ Տիկ. Օննիկ Աճէմեան 2000 ֆր. կը նուիրեն Քաշանի Ց. Կ. Խաչի մասնաճիւղին իրենց մօր Տիկ. Մաքրուհի Տէմիրճեանի մահուան առթիւ։

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Փօքն,—Տէր եւ Տիկ. Կիւմիւշեան հոգեհանգստեան պատարագ կը մատուցանեն, այս կիրակի, առաւօտ, Լիոնի Հայոց եկեղեցին, 69 rue Louis Blanc, նորոգ հանգուցեալ Պ. Միշէլ Սիվազեանի նաեւ Սիվազեան եւ Կիւմիւշեան ընտանիքներու հոգւոյն։ Կը խնդրուի իրենց յիշատակը յարգողներէն ներկայ ըլլալ։

# ՄԱԿի օրակարգը

## ԶԻՆԱԹԱՓՈՒԹԻՒՆ, ՔՈՐԷԱ ԵՒ ՊԱՂ ՊԱՏԵՐԱԶՄ

Նախագահ Թրումըն չորեքշաբթի իրիկուն ճառ մը պիտի խօսի եւ կոչում պիտի ընէ ընդհ. մարդկութեան ողջմտութեան: Կը թուի թէ Պ. Ռոպէր Շումանի ծանուցած «զգայացունց ձեռնարկ»ները կը վերաբերին զինաթափութեան, զոր Սպիտակ Պալատան իշխանաւորը պիտի ներկայացնէ բոլորովին նոր եղանակով մը: Զրոյց կը շրջի թէ Մարաջախտ Սթալին պիտի պարզէ սովետական տեսակէտը:

Պ. Տին Էչիսըն իր կարգին քաղաքական կարեւոր ճառ մը պիտի խօսի հինգշաբթի օրուան ՄԱԿի ժողովին: Կը կարծուի թէ Երեք Մեծերը Մոսկուայէն պիտի խնդրեն, որ իրենց յայտնէ իր զինուորական ուժին եւ ռազմական մեքենային տարողութիւնը: Դաշնակից պետութիւնները կը խորհին այդպէս ընդհ. գաղափար մը ունենալ եւ հակակշռել սպառազինութիւնները, զինաթափութեան հարցը բարւոք կերպով լուծելու համար: Խորհ. Միութիւնը տրամադիր չի թուիր նախկին զէնքերը բաժնել հիւլէական ռումբէն, այլ կը պահանջէ որ երկուքը միասին քննութեան առնուին, ձգձգումներէ խուսափելու համար:

Հաւաքական ապահովութեան խորհուրդը ասկէ առաջ Զինադադարը Նախայարձակ հռչակած եւ ջատագոված էր տնտեսական, քաղաքական եւ զինուորական պատժարկումները: Խիստ հաւանական է, որ ՄԱԿի սեղանին բերուի այս հարցը, ինչ որ կրնայ տհաճութիւն պատճառել Մոսկուայի եւ Հակախորհրդային հոսանք մը ստեղծել ժողովին մէջ:

Գերմանիոյ երկու հատուածներուն միացման հարցը դժուարութեան խնձոր մըն է Մոսկուայի եւ դաշնակից պետութեանց միջեւ: Խ. Միութիւնը տրամադիր է նկատի առնել արեւմտեան Գերմանիոյ միացման բաղձանքը, բայց կը խորհի թէ հարցը առաւելապէս կը վերաբերի Չորս Մեծերուն եւ ոչ թէ ՄԱԿի պետութիւններուն: Միւս կողմէ, հաւանականութենէ հեռու չէ, որ Մոսկուան լուրջ եւ վիճելի առաջարկներ բերէ, այս խնդրին կարգադրութեան համար:

ՄԱԿի ժողովին նոր անդամներ ընտրելու հարցը երկրորդական կարգի վրայ կուգայ, արաբական երկիրներուն արծարծած Մարոքի խնդրին քով: Պաղ պատերազմը առաջին գծին վրայ կ'իյնայ, բայց կարելի չէ լուծել թնճուկը, քանի կը շարունակուի Քորէայի պատերազմը: Մօտ օրէն յայտնի պիտի ըլլայ թէ կարելի՞ է զինադադարը թէ պէտք պիտի ըլլայ զօրացնել զինուորական գործողութիւնները:

### ԶՕՐ. ՏԸ ԳՕԼ ԿՈՉ Կ'ՈՒՂՂԷ ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ՖՐԱՆՍԱՑԻՆԵՐՈՒՆ ՄԻԱՆԱԼ ԻՐԵՆ

Զօր. տը Գօլ կիրակի օր Ռ. Փ. Ֆ.ի համաժողովին փակման ճառը խօսեցաւ: Նախ դիտել տուաւ թէ Ատլանտեան դաշինքին պէտք է մասնակցիլ, բայց իրենց դաշնակիցները ուռճացութեան անխուսափելի միտումներ ունին, որոնց ընդդիմանալը անհրաժեշտ ու միեւնոյն ատեն դժուար է: Հնդկաչինի պատերազմը ազատութեան պատերազմն է, շատ սուղի կը նստի իրենց, իսկ եթէ անկէ ձեռք քաշելու ըլլան, աւելի սուղի պիտի նստի:

Զօրավարը անդրադարձաւ դպրոցական հարցին, թերի գտաւ առնուած որոշումը եւ տրամադրութիւն յայտնեց յետագային լաւագոյնը ընել: Յետոյ կանգ առաւ պողպատի եւ ածուխի ծրագրին վրայ, խիստ վտանգաւոր գտաւ Ֆրանսայի համար, որովհետեւ նոր կառուցուած Եւրոպայի մը մէջ առաջին սխալը շատ սուղի կրնայ նստիլ գաղիական մետաղագործութեան:

«Գալով երկրորդին, շարունակեց զօր. տը Գօլ, սա բանը պիտի պատահի որ Ֆրանսա խսկական բանակ ունեցող բոլոր ազգերուն մէջ միակը պիտի ըլլայ որ պիտի կորսնցնէ իրենը: Եւ ասիկա վասն զինուորական տարօրինակ խառնուրդի մը կազմութեան, դրուելու համար անուանը տակ Եւրոպայի մը, որ գոյութիւն չունի, բայց փոխարինուած է ոտքերը վեր տնկած Ամերիկացի զօրավարէ մը, անշուշտ շատ լաւ եւ շատ փառաւոր, այլ կը թուի թէ արդէն օժտուած է բաւականաչափ հողաբաժինով մը»: Զօրավարը վերջացուց իր խօսքը, կոչ ուղղելով, որ կարող եւ հայրենասէր մարդիկ իրեն միանան:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԵԼԿՐԱՏԻ կառավարութիւնը մտադիր է բողոքագիր մը ներկայացնել ՄԱԿին, դրացիներուն կողմէ յարուցուած սահմանագլխային յաճախակի միջադէպերուն համար: Ցարդ գոհացած էր դիւանագիտական դիմումներով:

ԱԼԵՔՍԻՍ ՊԱՏԱՅԵՎ, Նախկին Նախագահ Խ. Միութեան Գերագոյն Խորհուրդին, մեռած է Մոսկուայի մէջ, 77 տարեկանին: Վերջերս անդամ էր համայնավար կեդր. յանձնաժողովին:

ԼԷՈՆ ԺՈՒՀՕ, Աշխատանքի ընդհ. Դաշնակցութեան ղեկավարներէն մին, շահած է Նոպէլի Խաղաղութեան մրցանակը: Պարգեւին գումարն է 167.612 քուրոն, որ կը բնէ մօտաւորապէս 12 միլիոն ֆրանք:



**Le Gérant : A. NERCESSIAN**

Imp. DER AGOPIAN. 17. Rue Damesme. Paris (13)

# ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այսկիրակի առաւօտ ժամը 9.30ին, վերջին ժողովատեղին:

ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊ.— Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի ժողովը այս ուրբաթ ժամը 21ին: Շարունակութիւն նախորդ ժողովի: Ծանօթ սրճարանը:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Մարսէյլի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբի պարահանդէսը, 22 Դեկտ.ին, շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ լոյս:

ԱՐԵՒՄՈՒՏՔԻ ԼՍԱՐԱՆԻՆ հերթական հաւաքոյթը այս չորեքշաբթի երեկոյ Քաւէ սրճարանին վերնայարկը: Կը խօսի Պոլսէն վերջերս եկած երիտասարդ մը՝ Պոլսահայ մտաւորական շարժումին մասին: Մուտքը ազատ է:

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Մարսէյլէն Տէր եւ Տիկին Պապանեան Թագւոր եւ Արաքսի, տարաբախտ Կարպիս Փափազեանի մահուան առթիւ, ցաւակցութիւն յայտնելով Այրի Տիկին Բարուհի Փափազեանի եւ Շ. Նարդունիի, փոխան ծաղկեպսակի 3000 ֆրանք կը նուիրեն «ՀԱՅ - ԲՈՅԺ»ի ֆոնտին:

րանքէ կարեւոր բաժին մըն ալ հանեց ֆրանսական կառավարութեան ։

« Ամերիկացի աշխարհակալները յարձակման օճախներ հիմնած են արեւելեան եւ արեւմտեան կողմերը, այսինքն Ճափոնի եւ արեւմտեան Գերմանիոյ մէջ։ Հիմա ձեռնարկած են Գերմանիոյ վերազինման, վաղեմի Նացիներու աջակցութեամբ։ Այս քաղաքականութեան նեցուկ կը հանդիսանայ ֆրանսական կառավարութիւնը, երբ ժողովուրդը դաժանօրէն տառապած է գերմանական յաճախակի արշաւանքներէն»։

« Եւրոպական ժողովուրդները, եզրակացուց Փոլիպիւրոյի դաժան գործավարը, կ'ըմբռնեն այն վտանգը զոր կը ներկայացնէ դրամատիրական երկիրներու այս քաղաքականութիւնը։ Գալով Խ. Միութեան, ան թոյլ չի կրնար տալ Ֆրանսայի կառավարութեան, ոչ Փոցտամի համաձայնութիւններուն, ոչ ալ 1944ին կնքած բարեկամական եւ փոխադարձ օգնութեան դաշինքին բռնաբարման։ Ֆրանսական կառավարութիւնը պիտի կրէ բովանդակ պատասխանատուութիւնը իր վարած քաղաքականութեան հետեւանքներուն» ։

## ՉԸՐՉԻԼԻ ԴԱՀԼԻՃԻՆ ԴԺՈՒԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ինչպէս հաղորդած էինք երէկ, Չըրչիլի դահլիճը տնտեսական եւ ելեւմտական ծանր դժուարութիւններու առջեւ կը գտնուի ։ Յառաջիկայ տարի պետական բացը կրնայ յանգիլ 500 — 600 միլիոն սթերլինի, դեռ կարելի է նախատեսել ոսկիի եւ «տոլլար»ի գիներուն վրայ աւելի կարեւոր անկումներ ։

Աշխատաւորական նախորդ կառավարութիւնը շատ կը զուարճանայ տեսնելով որ Չըրչիլ իր պարենաւորման նախարարին չքմեղանքին կը դիմէ ։ Ցիրաւի, վարչապետը յայտարարած է, որ միսին բաժնեչափը պիտի պակսի եւ մօտաւոր թուականի մըն ալ բարելաւման յոյս չկայ։ Միեւնոյնը վառելանիւթի համար ։

Պ. Էթլի պահպանողական վարչապետին չափ կոպիտ կ'երեւի, մանաւանդ որ աշխատաւորականները աւելի քուէ շահած են, բայց տրամադիր չէ ճղճիմ պատճառներու համար կուսակցական պայքար մղել ներկայ կառավարութեան դէմ։ Նախկին նախարարապետը Չըրչիլի դահլիճին ապազգայնացման որոշումը աւելի « կուսակցական վարդապետութեան» կը վերագրէ։ Պահպանողական կառավարութիւնը ըստ իրեն պէտք չունի «անկեղծ եւ ամբողջական յայտնութիւններ» ընելու ելեւմտական եւ տնտեսական կացութեան մասին, որովհետեւ ինք յարատեւօրէն տեղեկացուցած է իրողութիւնը ժողովուրդին ։

## ԴԷՊՔԵՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Դիւանագիտական մեծ գործունէութիւն մը կը տիրէ Եգիպտոսի մէջ, առեւտրական դաշնագիր մը կնքելու համար Մոսկուայի հետ, ինչպէս հաղորդած էինք աւելի առաջ։ Խորհ. դեսպան Պ. Սիմոն Քոզիրէվ առաջարկ բերած է որ Ռուսերը լաւագոյն վերաբերումի մը արժանան Եգիպտոսի մէջ (ցարդ խորհրդային նաւավները ցամաք ոտք դնելու իրաւունք չունէին) ։

Մոսկուայի նախկին եգիպտական դեսպան Պ. Պինտարի, «կարմիր փաշա» յորջորջուած, հետեւեալ յայտարարութիւնը ըրած է.— Եգիպտացի ժողովուրդը անցած է ստորագրութեան սահմանը։ Ուժական պայքարի մը լծուած է։ Ան իր արիւնը կը թափէ, ազատութիւնը եւ աշխարհի խաղաղութիւնը պահպանելու համար։ Պայքարին, ինչպէս եւ Եգիպտոսի յաղթանակը աւելի հեռու պիտի ըլլան»։

Միւս կողմէ, անգլիական ուժերուն վերին հրամանատար զօր. Ճորճ Էրսքին Ֆայէտի ճայնասփիւռէն հետեւեալ ազդարարութիւնը ուղղած է.— Եգիպտական կառավարութեան կողմէ ազատ կամքով ստեղծուած գոյավիճակի մասին պատասխանատուութիւն չեմ ստանձներ»։ Բրիտանական իշխանութիւնը անընդհատ կը վտարէ այն տեղացի ոստիկանները, որոնք արգելք կը հանդիսանան Արաբներու աշխատանքին։ Մնաց որ, Մալթայէն բազմաթիւ նաւավներ կը հասնին, գանոնք փոխարինելու համար ։

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՔԱՌԱՍՆՕՑ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս կիրակի ժամը 10ին, Փարիզի Հայոց եկեղեցիի օծման 47րդ տարեդարձին առթիւ, հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, եկեղեցաշէն եւ մեծ բարերար ողբացեալ Ալեքսանտր Մանթաշեանի եւ Մանթաշեան գերդաստանի համայն ննջեցեալներու յիշատակին։ Նոյն օրը զուգադիպած ըլլալով նաեւ ողբացեալ Հոգելոյս Տէր Արտաւազդ արք. Սիւրմէեանի մահուան քառասունքին, Հայր Մերի պահուն պիտի կատարուի հոգեհանգիստ իր յիշատակին ։Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը ։

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

Կը տօնուի ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆԻ մէջ։ Նախաձեռնութեամբ տեղւոյս «Արծիւ» ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ի, Կիրակի կէսօրէ վերջ, Նոյեմբեր 11ին, ժամը 15էն մինչեւ 23, Պանեէօյի ֆրանսական դպրոցի սրահին մէջ, 69 rue d'Arcueil, Պանեէօ ։

Կը նախագահէ ընկեր Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

Կը խօսի ընկեր ԽԱԶԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Արտասանութիւն եւ գեղարուեստական բաժին։ Կը ներկայացուի Պաշտօնս խոմբալ է կատակերգութիւնը։ Կը նուագէ Թառիստ Գարեգին եւ ընկ. Բենօ ։ Ճոխ պիւֆէ ։

Autobus: Porte d'Orléans 188 իջնել Պանեէօ ։

### Հ. Յ. Դ. ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Մարսէյլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Խատիսեան» խումբը կազմակերպած է երեկոյթ մը 17 Նոյեմբեր, շաբաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին ։

Պիտի խօսի ընկեր Ա. ՔԷՕՍԷԵԱՆ

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները ։







### ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԶՈՀԵՐՈՒ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Կը ծանուցանէ որ այս կիրակի Նոյեմբեր 11ին միմիայն «Bleuet de France» ծաղկի վաճառում տեղի պիտի ունենայ ամբողջ Փարիզի եւ արուարձաններու մէջ, Նախկին Մարտիկներու եւ Պատերազմի զոհերու ի նպաստ։ Կը խնդրուի ժողովուրդէն առատաձեռն ըլլալ, մեղմելու համար թշուառութիւնը պատերազմի այրիներու եւ որբերու ։

### Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԸ

Ողջերթի թէյասեղան մը կազմակերպած է, իր գործօն ընկերուհիներէն Տիկին Արուսեակ Պետրոսեանի եւ Տիկին Յասմիկ Մամիկոնեանի ի պատիւ, անոնց Ամերիկա մեկնումին առիթով ։

Կը հրաւիրուին ընկերուհիները այս շաբաթ կէսօրէ վերջ ժամը 4ին, Տիկին Զիթունիի բնակարանը, 13 rue Caumartin, Paris (9):


Le Gérant : A. NERCESSIAN
Imp. DER AGOPIAN, 17, Rue Damesme, Paris (13)


## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.—Հ.Յ.Դ.Ռոստոմ խումբի ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9.30ին, վերջին ժողովատեղին ։

ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊ.— Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի ժողովը այս ուրբաթ ժամը 21ին։ Շարունակութիւն նախորդ ժողովի։ Մանօթ սրճարանը ։

Շ. ԳԱՐԱՀԻՍԱՐՑԻ հայրենակիցներ շատ կարեւոր հարցի մը համար կը հրաւիրուին խորհրդակցական ժողովի մը, այս կիրակի ժամը 3ին, 23 rue Jouye Rouve, Տէօվլէթեաններու տունը ։

Ֆր. ԿԱՊ. ԽԱՉԻ Շավիլի մասնաճիւղի ընդհ. ժողովը 17 Նոյ. շաբաթ օրը ժամը 4ին, դպրոցին սրահը։ Ներկայ կ'ըլլայ կեդր. վարչութեան ներկայացուցիչը ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Մարսէյլի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբի պարահանդէսը, 22 Դեկտ.ին, շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ լոյս։

ՑԵՏԱՁԳՈՒԱԾ Է Մարսէյլի Վաստ. Հայր. Միութեան 23 Նոյեմբերի համար նախատեսուած երիտասարդներու պարահանդէսը Դեկտ. 1ին։

Կը խնդրուի նկատի ունենալ եւ չխաչաձեւել ։



ՎՐԻՊԱԿ.— «Յառաջ»ի հինգշաբթի օրուան թիւին Ե. Քոչեանի յօդուածին 45րդ տողին մէջ ծւայի կարդալ Եւայի, եւ յաջորդ տողին տամը՝ տուամ ։

## ՖՐԱՆՍԱՅԻ ԵԼԵՒՄՏԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԸ

Ինչպէս յայտնի է, Փլեվէնի դահլիճը կարգ մը ծանրակշիռ առաջարկներ պիտի բերէր երեսփ. ժողովին, ելեւմտ. տագնապը մեղմելու եւ սպառազինութիւնները իրագործելու համար: Այս առթիւ, վարչապետը յայտարարած է թէ՝ կառավարութեան անվստահութիւն յայտնելու պարագային, ընդհ. ժողովը պատմական պատասխանատուութիւն մը պիտի առնէ իր վրայ :

Դահլիճին ծրագիրը ներկայացնելու պաշտօնը վիճակած է ելեւմտ. նախարար Ռընէ Մայերի: Տեղական մամուլը կը խոստովանի թէ քիչ մը շատ յոյս դրին օտար աջակցութեան վրայ, սովորական դէպի պատերազմական պիւտճէն երթալու համար: Այժմ, հարցը հոն է որ Միացեալ Նահանգները ի՞նչ չափով պիտի օժանդակեն իրենց: Ուրբաթ առտուն, վարչապետ Փլեվէն այս հարցին մասին տեսնուեցաւ Հերիմընի եւ Տին Էչիսընի հետ, արդիւնքը տակաւին անծանօթ կը մնայ :

Ֆրանսական պիւտճէն 1952ի շրջանին համար կը նախատեսէ 3420 — 3450 միլիառ ֆրանք : Այս գումարին 950 միլիառը պիտի յատկացուի զինուորական ծախքերուն, 900 միլիառը՝ պատերազմական վնասներուն եւ Մոնէի ծրագրին իրագործման, իսկ 1575 միլիառը՝ քաղաքային պիւտճէին, որուն 200 միլիառը պետական վերակառուցման :

Ռընէ Մայեր իր ծրագիրը երէկ ներկայացուց երեսփ. ժողովին: Նախարարը մի առ մի մանրամասնօրէն բացատրեց այն բոլոր պատճառները, որոնք կառավարութիւնը մղած են խիստ միջոցներ ձեռք առնել: Օրինակի համար, այս տարին լրացնելու համար կը պակսէր 30 միլիառ, ուստի որոշում տրուած էր աւելցնել ծխախոտին եւ հրանիւթին գիները: Ելեւմտական նախարարը կ՚առաջարկէ 200 միլիառ յաւելուածական տուրք, նեղութիւնները պակսեցնել 75 առ հարիւր : Յունուար 1էն սկսեալ ամերիկեան ածուխի ներածում պիտի չըլլայ, թերթերը պիտի պակսեցնեն իրենց էջերը, բամպակին հայթայթումը պիտի սահմանափակուի, իսկ հրանիւթի խնայողութիւն պիտի ըլլայ :

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎԻՇԻՆՍՔԻ, որ հինգշաբթի խօսք պիտի առնէր ՄԱԿի մէջ, ուրբաթ օրուան յետաձգեց իր ճառը, Ռոպէր Շումանէն առաջ: Այս անգամ աւելի մեղմ էր, բայց եւ այնպէս իր առաջարկները նորութիւն չէն բերեր: Խորհրդային պատուիրակը խստօրէն քննադատեց արեւմտեան զինաթափութեան ծրագիրը, որ կը ճգնի նախընտրութիւն տալ հիւլէական ռումբին, առաջարկեց Ապահովութեան Խորհուրդին բերել զինաթափութեան հարցը, ինչ որ վեթոյի հնարաւորութիւն կընայ տալ իրեն :

ՌՈՊԷՐ ՇՈՒՄԱՆ առաջուընէ պատրաստած էր իր ճառը, այնպէս որ ուղղակի չկրցաւ պատասխանել Վիշինսքիի, միայն ըսաւ թէ իրենց զինաթափութեան ծրագիրը վերջնական չէ, կարելի է սրբագրել : Արտաքին նախարարը դիտել տուաւ թէ համաշխարհային տագնապին բուն պատճառը այն խորհուրդն է, որ կը շրջապատէ Մոսկուայի կառավարութիւնը: «Պատերազմը կը պատրաստուի գաղտնի կերպով, աւելցուց Ռոպէր Շուման, ինչպէս բոլոր վատ գործերը: Վերցնենք գաղտնիքը, ուղղամտօրէն, առ պիտի ըլլայ դէպի խաղաղութիւն նետուած առաջին քայլը»: Նախարարը վերջացուց իր խօսքը յուզիչ կոչ մը ուղղելով գործակցութեան :

ԵԳԻՊՏՈՍԻ մէջ դարձեալ միջադէպերը շատցած են Անգլիացիներուն եւ տեղացիներուն միջեւ: Արաբները յարձակած են բրիտանացի նաւապետի մը վրայ, Ֆայիտ Փորթ Սայիտ ճամբուն վրայ, մարդը յաջողած է օձիքը ազատել: Փորթ Սայիտի մէջ, քանի մը Անգլիացի զինուորներ կռուի բռնուած են տեղացիներուն հետ, 1 մեռեալ եւ վեց վիրաւոր կայ, որոնցմէ երկուքը «Թոմ»ի :

ԵՐԳԶՈՒՀԻ Աննի Քուլտ աղաւնի մը նուիրած է Վիշինսքիի, որ թռչունը ձեռքը բռնած ներս մտած է ՄԱԿէն: Շուէտի պատուիրակը հարց տըւած է Մոսկուայի ներկայացուցիչին, որ մի՞ գուցէ մտադիր է աղաւնին կեր տալ այն սեւ կատուին, որ առեան եկած էր Իտընի ճառ խօսած միջոցին: «Անշուշտ, ոչ», պատասխանած է Վիշինսքի :

ԿԱԶԻՆ գինը մօտ օրէն կը բարձրանայ 31 ֆր. 10ի, գիներու հակակշռի յանձնաժողովին որոշումով :

ՈՒՈՇԻՆԿԹԸՆ կը մերժէ ճանչնալ Ֆարուքի հանդամանքը իբր արքայ Սուտանի, մինչ խորհրդային մամուլը իր Եչ. օրուան թիւին մէջ կը յիշէ զայն իբր «արքայ Եգիպտոսի եւ Սուտանի» :



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

Կը տօնուի Առնուվիլի մէջ, Նոյեմբեր 18ին
Հ. Յ. Դ. Վարդան Էնթակոմիտէի նախաձեռնութեամբ, Սալ Կալմանի մէջ, ժամը 3էն 11 :
Կը նախագահէ ընկեր ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ
Կը խօսի ընկեր ՍԱՀԱԿ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ
Գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերենՊ. Գարեգին (թառխառ), ընկեր Բենօ (սրինգ եւ տափ), երգողներ, եւ արտասանողներ: Ձրի պիւֆէ: Ծախքերու մասնակցութիւն 100 ֆրանք :

Հաղորդակցութեան միջոցներ.—Gare du Nordէն շոգեկառք 2.10ին, օթօպիւս Porte de la Chapelleէն թիւ 268ը :




**Le Gérant : A. NERCESSIAN**
Imp. DER AGOPIAN, 17, Rue Damesme, Paris (13)


## Վարչական

Կը խնդրուի մեր բաժանորդներէն պատասխանել իրենց ստացած ազդարարութեանց **(mandat cheque)**: Ոչ մէկ բաժանորդ իրաւունք ունի ապառիկ թերթ ստանալու :

Այս առթիւ անգամ մը եւս կը յիշեցնենք բոլորին, Միութիւն ըլլան թէ անհատ, որ մասնաւոր նամակներու չպասեն, ծանուցումներուն փոխարժէքը ղրկելու համար:

Տնտեսական տագնապը եւ յարաճուն ծախքերը կը ստիպեն մեզ անգամ մը եւս յիշեցնել թէ ի վիճակի չենք ձրի ազդեր հրատարակելու :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ.— Ֆր. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է ընկ. Շուշան Բարսեղեանէ, Տէր եւ Տիկ. Լիւլէճեանէ 1.000ական ֆրանք, իրենց աղջկան ընկ. Ա. Լիւլէճեանի մահուան տարելիցին առթիւ: Այրի Տիկ. Գապատայեանէ 1000 ֆր., հանգուցեալ յեղափոխական Բենիկ աղայի բաղձանքով: Ընկ. Ի. Յովհաննէսեանէ 500 ֆր. իր զաւկին զինուորութենէ վերադարձին առթիւ :

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Մասնաւոր շնորհակալութիւններ Տէր եւ Տիկին Շահպազեաններու, Տիկ. Ալեքսանեանի, Տիկ. Մարգարեանի եւ բոլոր նըւիրատուներուն որոնք իրենց պարտէզին ծաղիկները տրամադրեցին մասնաճիւղին, գերեզմաններու այցին համար :

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ընկ. Վերժին Շատեանի մօրաքրոջ մահուան առթիւ Տէսինի մասնաճիւղին կողմէ ցաւակցութիւններ :

ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ.— Փարիզի Հայ Աղքատախնամ Ընկերութեան վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է փոխան ծաղկեպսակի, հետեւեալ նուիրատուութիւնները.— Ողբացեալ Սմբատ Քեաթիպեանի զաւակներուն կողմէ 10.000 ֆր. , Պ. Հրանդ Խարբութեանի ամուսնութեան առթիւ Պ. Կ. Փափազեանէ 5000 ֆր., Պ. Կէնճեանի կողմէ հազար, Պ. Կէնճեանի կողմէ (Ծերանոցին) 1000 ֆրանք :

## Դէպքերը Արեւելքի մէջ

Փիոն Եունկի ձայնասփիւռը երկուշաբթի իրիկուն կը ծանուցանէր թէ՝ հիւսիսային Քորէան պատգամ մը ուղղած է Ապահովութեան Խորհուրդին, Քորէայի մէջ խաղաղութեան վերահաստատման համար չորս կէտերէ բաղկացած ծրագիր մը ներկայացնելով: Զարմանալին այն է, որ ՄԱԿի գրասենեակը ոչ մէկ տեղեկութիւն ունի այս առաջարկներուն մասին...: Ինչպէս ծանուցած էինք երէկ, դաշնակից բանագնացները ընդառաջ երթալով Զինեւքորէական զինաթափեալ գօտիի մը հաստատման խնդրանքին, այսօր կը սպասեն անոնց պատասխանին :

Իսմայիլեայի մէջ խաղաղութիւնը վերահաստատուած է: Անգլիական ուժերը կը պահպանեն քաղաքին կարգ մը թաղերը, իսկ եգիպտական ոստիկանութիւնը առաջուան պէս իր հրջապտոյտը կը կատարէ փողոցներուն մէջ: Զօր. Էրսքինի եւ Սուէզի կառավարիչ Իպրահիմ Ապտալլահ Կազալի միջեւ գոյացած համաձայնութեամբ մը, եգիպտացի ոստիկանները իրենց զէնքերը յանձնեցին զօրանոցներուն: Բրիտանական ուժերուն վերին հրամանատարը սպառնացած է Արաբներուն բռնի ուժի դիմել, եթէ անսաստեն իր հրահանգներուն :

Վերջին 48 ժամուան ընթացքին տեղի ունեցած ընդհարումներուն՝ զոհերուն թիւը հետեւեալն է.— 4 անգլիացի սպաննէր մեռած, վեց ալ վիրաւոր քաղաքացիներէն: Իսկ Եգիպտացիներէն ութը սպանեալ, որոնց հինգը ոստիկան, ու 24 վիրաւոր (16ը քաղաքացիներ) :

Եգիպտոսի խորհրդարանը որոշած է ծանուցագիր մը ուղղել աշխարհի բոլոր խորհրդարաններուն, ազդու կերպով բողոքելու համար Սուէզի Ջրանցքի գօտիին մէջ անգլիական զօրախումբերուն կողմէ գործուած բարբարոս արարքներուն, ընդդէմ Իսմայիլեայի խաղաղ քաղաքացիներուն եւ Եգիպտացի ոստիկաններուն :

Տոքթ. Մոսատեղ, որ կիրակի իրիկուն Ուաշինկթընէն մեկնած էր պատուիրակութեան անդամներուն հետ, Բշ. օր կանգ առաւ Ամսթերտամի օդակայանը: Իրանի վարչապետը երեքշաբթի առտու հասաւ Գահիրէ, ուր չորս օր հիւրը պիտի ըլլայ եգիպտական կառավարութեան :

╳ Ֆրանսական մամուլը կը մեկնաբանէ Մարոքի Սուլթանին խօսած գահաճառը, որ ընդհանրապէս խիստ չափաւոր կը նկատուի: Այն համոզումը կը տիրէ թէ վեհապետը միշտ հաւատարիմ կը մնայ Փարիզի մէջ իր տուած խոստումներուն, իրեն վերապահելով նոր պատճառաբանութիւններ: Կը հետեւի թէ Սիտի Մոհամմէտ միտք չունի դիմելու օտար միջնորդութեան, այլ կը փափաքի ուղղակի Ֆրանսայի հետ բանակցելով լուծել իր երկրի անկախութեան հարցը :

╳ ՄԱԿի եգիպտական պատուիրակութեան անդամներէն Տոքթ. Մահմուտ Ազմի յայտարարած է թէ՝ նկատի ունենալով որ դաշնակից պետութիւնները մերժած են զէնք տրամադրել իր երկրին, ստիպուած է դիմել Զուիցերիոյ եւ Չեխոսլովաք կառավարութիւններուն իր ուզածը ձեռք ձգելու համար :

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՈՂՈՂՈՒՄՆԵՐ Հարաւային Ֆրանսայի մէջ, Պօլէն Ջուրերու մէջ, Ավինեօն ողողուած: Մարսէյլ - Փարիզ երկաթուղիի գիծը եւ ճամբան քանի մը տեղերը կտրուած: Շոգեկառքերու կարեւոր յապաղում: Մանրամասնութիւնները վաղը :

ՄՈՍԿՈՒԱՅԻ ամերիկեան դեսպան ծովակալ Ալըն Քիրք հրաժարած ըլլալով, գրոյց կը շրջի թէ իր տեղը պիտի նշանակուի Ճորճ Քինըն: Այս վերջինը շատ կարող դիւանագէտ մըն է, ու ամերիկեան կառավարութիւնը մեծ ակնկալութիւններ ունի իրմէ, կարգ մը քաղաքական ձեռնարկներու յաջողութեան համար :

ՀԱՅԱԶԳԻ գրագէտ Պ. Քրիսթիան Տէտէյան շահած է 1951ի «Ֆրանսիս Ճէմ»ի գրական մրցանակը : Պսակաւորը մեծ համբաւ ունի ֆրանսական գրական աշխարհին մէջ, շատ մը վէպեր հրատարակած է, որոնք գնահատութեան արժանացած են :

ԶՕՐ. ՌԻՃՈՒԷՅ զեկոյց մը հրատարակած է, որ կը հաստատէ դաշնակից գերիներուն կոտորածը, Զինեւքորէացի զինուորներուն կողմէ: Անոնք կը հերքեն այս ամբաստանութիւնները եւ կը ջանան մեղքը ձգել Ամերիկացիներուն վրայ, որոնք ըստ իրենց գերի ինկած Քորէացի զինուորները թիրախ կը ծառայեցնեն հիւլէական ռումբին :

ՃՈՐՃ ՄԸՔ ՃԻ, Միացեալ Նահանգներու պատ. նախարարութեան քարտուղարը, պաշտօնանկ եղած եւ նշանակուած է Անգարայի դեսպան: Կը կարծուի թէ Ուաշինկթընի կառավարութիւնը դժգոհ էր իր վարած քաղաքականութենէն եւ մտադիր է տարբեր ուղղութիւն մը որդեգրել Միջին Արեւելքի մէջ :

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris(13)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէի, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի, ինչպէս նաեւ Կապոյտ Խաչի, Համազգային Ընդհ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղին :

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 9էն մինչեւ լոյս, Թէաթրը Վէրտիի մէջ, (Նախկին Գազա տ'Իթալիա, բիւ տ'Ալժէ :

Կը նախագահէ ընկեր Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

Կը խօսին ընկերներ Ս. ԹՈՐՈՍԵԱՆ, Տ. ԹԱԴՈՅԵԱՆ եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան կողմէ ընկեր Վ. ՕՇԱԿԱՆ :

Գեղարուեստական խնամուած բաժին, սիրայօժար մասնակցութեամբ Տիկ. Սիւզան տը Սիմոնի

Բեմին վրայ հայկական խմբապար եւ մենապար, մասնակցութեամբ Նոր Սերունդի «Հրայր» խումբին:

Եւրոպական պար մինչեւ լոյս, ղեկավարութեամբ Սարգիս Չէօրէքճեան նուագախումբին :

Ճոխ պիւֆէ, դիւրամատչելի գիներով :

Մուտքը ազատ է :

╳

ՎԱԼԱՆՍԻ մէջ, այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30-ին, Սալ տէ Ֆէթի մէջ:

Կը խօսին ընկերներ ԺԻՐԱՅՐ ՓԱԼԱՄՈՒՏԵԱՆ, Վահէ ՕՇԱԿԱՆ եւ Տիկ. Օ. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ :

╳

ՌՈՄԱՆԻ մէջ այս շաբաթ երեկոյ ժամը 8.30-ին: Կը խօսի ընկեր Գ. ՔԻՐԷՃԵԱՆ:

Մանրամասնութիւնը տեղւոյն վրայ :



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի հաւաքոյթը այս հինգշաբթի, ժամը 9ին Ազգային Տան մէջ, 32 rue de Trévise: Հայերէնի դասընթացքը ժամը ճիշդ 8ին :

Հ. Յ. Դ. Շավիլի «Արդութեան» խումբի ժողովը այս շաբաթ երեկոյ, ժամը 9ին, ընկ. Կիւլեանի բնակարանը :

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ

Պ. Օտտոյի «Խատիսեան» խումբի վճարանական ժողովը 27 Նոյեմբեր, երեքշաբթի օր սովորական հաւաքատեղին : Նիւթը՝ «Հայրենասիրութեան ըմբռնումը մեր եւ մեր հակառակորդներու միջեւ» :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Իսի լէ Մուլինոյի Հ. Յ. Դ. Նոր Սերունդին խնճոյք - պարահանդէսը կիրակի 2 Դեկտեմբեր «Խրիմեան» սրահին մէջ :

